Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 19 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1959

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Նյութեր զեկուցումների և զրույցների համար

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 42-րդ տարեդարձը . . . . 1

Եղբայրական սոցիալիստական երկրներում

Ալբանական ժողովրդական ռեսպուբլիկայի նոր հաջողությունները . . . . 45

Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։

ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 42-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*1959 թվականի նոյեմբերի 7-ին Սովետական Միության ժողովուրդները, սոցիալիզմի լագերի երկրների աշխատավորները, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը նշում են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի 42-րդ տարեդարձը։*

*42 տարի է անցել այն ժամանակաշրջանից, երբ մեր երկրի բանվոր դասակարգը, չքավոր գյուղացիության հետ դաշնակցած, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ տապալեց կալվածատերերի և կապիտալիստների տիրապետությունը Ռուսաստանում և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա, ստեղծեց բանվորների և գյուղա-*





ցիների աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի կազմակերպիչ ու ոգեշնչող Կոմունիստական պարտիան նախընթաց ամբողջ գործունեությամբ նախապատրաստված էր իր այդ մեծագույն միսիան կատարելու համար։ Քաղաքական մարտերում կոփված, մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ տեսությամբ զինված, ժողովրդի հետ անխզելիորեն կապված Կոմունիստական պարտիան վստահորեն ու համարձակ կերպով բանվոր դասակարգին և չքավորագույն գյուղացիությանը գրոհի տարավ ցարիզմի և կապիտալիզմի դեմ։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան վերջ տվեց բոլոր և ամեն տեսակ սոցիալական և ազգային ճնշմանը, սկիզբ դրեց աշխատավորների իսկական իրավահավասարությանը, բոլոր ժողովուրդների եղբայրությանը, ստեղծեց այնպիսի հասարակարգ, որտեղ վերացված են շահագործող դասակարգերը, ոչնչացված է մարդու շահագործումը մարդու կողմից։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ մեր երկրում հաստատվեց բանվոր դասակարգի քաղաքական տիրապետությունը՝ պրոլետարիատի դիկտատուրան։



Պատմության մեջ առաջին անգամ ժողովուրդը դարձավ իր բախտի, իր երկրի տերը, գործարանները, ֆաբրիկաները, երկաթուղիները, բանկերը, հողը և նրա ընդերքը դարձան համաժողովրդական սեփականություն։

Մարդկության պատմությունը ռևոլյուցիոն շատ սխրագործություններ գիտե, բայց դրանցից ոչ մեկը չի կարող համեմատվել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հետ։ 1917 թվականի Հոկտեմբերյան հաղթանակն իրեն հավասարը չունի, քանի որ այն առաջին անգամ ճեղքեց իմպերիալիզմի ճակատը, մարդկության պատմության մեջ սկիզբ դրեց նոր դարաշրջանի՝ կապիտալիզմի կործանման և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման դարաշրջանին։

Կապիտալիստական շրջապատման պայմաններում, վիժեցնելով միջազգային իմպերիալիզմի չարանենգ դիտավորությունները, ընկճելով դասակարգային թշնամիների կատաղի դիմադրությունը, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ խաղաղ սոցիալիստական շինարարության։

Կոմունիզմի մեծ ճարտարապետ Վ. Ի. Լենինը մշակեց մեր երկրում սոցիալիզմի ու

կոմունիզմի կառուցման գիտականորեն հիմնավորված ծրագիրը, որի բաղկացուցիչ մասերն են՝ երկրի սոցիալիստական ինդուստրացում և ամենից առաջ ծանր արդյունաբերության բազմակողմանի զարգացում, ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացում, սոցիալիստական հիմունքներով գյուղատնտեսության վերափոխում, կուլտուրական ռևոլյուցիայի իրականացում։

Կոմունիստական պարտիան հաջողությամբ իրականացնելով երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման լենինյան քաղաքականությունը, ապահովեց սոցիալիզմի վերջնական հաղթանակը մեր երկրում, հարթեց ամբողջ մարդկության պայծառ ապագայի լայն ուղին։

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին սովետական ժողովուրդը մեկ մարդու նման ոտքի ելավ և հիտլերյան հրոսակախմբերից պաշտպանեց Մեծ Հոկտեմբերի նվաճումները, իր Հայրենիքի ազատությունը, պատիվն ու անկախությունը։ Սովետական Միությունը միաժամանակ պատվով կատարեց իր ինտերնացիոնալ պարտքը՝ եղբայրական օգնության ձեռք մեկնելով իրենց ազատության և անկախության համար պայքարի ելած Եվրոպայի և Ասիայի մի



շարք ժողովուրդների, որոնք թևակոխեցին զարգացման սոցիալիստական ուղին։

Սոցիալիզմի հաղթանակը և կոմունիստական շինարարության ծավալը ՍՍՌՄ-ում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը, խաղաղության և դեմոկրատիայի ուժերի աճն ու ամրապնդումը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի, լենինիզմի գաղափարների մեծագույն տրիումֆն են։



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 42-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման բոլոր բնագավառներում ձեռք բերած վիթխարի հաջողություններով։ Սովետական ժողովուրդը նշանակալից հաջողություններ է ձեռք բերել առանձնապես ՍՄԿՊ XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում։ Այդ շրջանում պարտիայի և կառավարության իրականացրած արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումը և ժողտնտխորհների ստեղծումը, միութենական ռեսպուբլիկաների, տեղական օրգանների և ձեռնարկությունների իրավունքների ընդլայ-

նումը, պլանավորման վերակառուցումը էկոնոմիկայի զարգացման հեռանկարային պլանների մշակումը, ՄՏ կայանների վերակազմումը և կոլտնտեսային կարգի հետագա զարգացման միջոցառումները, գյուղատնտեսական մթերքների մթերումների կարգի փոփոխումը և միասնական գների հաստատումը, քիմիական ու գազի արդյունաբերության զարգացման, բնակարանային շինարարության միջոցառումները, դպրոցի վերակառուցումը, արհմիությունների իրավունքների ընդլայնումը և այլն տվել են իրենց դրական արդյունքները։

Մեր Հայրենիքի հսկայական տարածությունների վրա Բալթիկայից մինչև Խաղաղ օվկիանոսի ափերը, Հյուսիսային բևեռից մինչև Պամիրի լեռնաշղթան, վառվում են արդյունաբերական կենտրոնների կրակները, ծաղկում են կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերը, եռում են կոմունիզմի միլիոնավոր կառուցողների ստեղծագործ աշխատանքը։ Մեր աչքերի առջև տեղի է ունենում նոր քաղաքների, էլեկտրակայանների շինարարությունը, փոխվում է գետերի հունը, յուրացվում են տասնյակ միլիոնավոր հեկտար խամ ու խոպան հողեր, գծվում են երկաթուղային մագիստրալներ, մարդուն է



ծառայեցվում ատոմային միջուկի անսպառ էներգիան. Երկրի և Արեգակի շուրջը կոսմիկական երթ են կատարում սովետական արբանյակները։ Մենք ապրում ենք այնպիսի դարաշրջանում, երբ աշխատավոր մասսաների քրտնաջան աշխատանքով վեր է բարձրանում նոր հասարակարգի՝ կոմունիզմի վիթխարի շենքը։

ՍՄԿՊ XXI համագումարը նոր փառավոր էջ բացեց մեր երկրի պատմության մեջ, նշանավորեց նրա էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի նոր, կարևոր աստիճանը, ամփոփեց անցած ուղու արդյունքները, պարտիային և ամբողջ ժողովրդին զինեց կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագրով։

Կոմունիստական պարտիան առաջնակարգ նշանակություն է տալիս ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման, երկրի անկախության և պաշտպանունակության ամրապնդման հիմքի՝ ծանր ինդուստրիայի զարգացմանը։ Թե ինչպիսի հրաշալի արդյունքներ են ձեռք բերվել մեզ մոտ այդ բնագավառում, երևում է թեկուզ նրանից, որ 1958 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է 36 անգամ, ընդ որում արտադրության միջոցների

արտադրությունը՝ 83 անգամ, իսկ մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը՝ 240 անգամ։

1957 թվականին մեր երկիրը յուրաքանչյուր 7 օրում այնքան արդյունաբերական արտադրանք է տվել, որքան ամբողջ 1917 թվականին։

Մենք զգալիորեն ավելի շատ չուգուն ենք արտադրում, քան Անգլիան, Ֆրանսիան և Բելգիան միասին վերցրած, իսկ պողպատ այնքան որքան Անգլիան, ԳՖՌ և Իտալիան միասին։ Մեզ մոտ յուրաքանչյուր ամիս ավելի շատ պողպատ է ձուլվում և նավթ արդյունահանվում, քան ամբողջ 1913 թվականին, իսկ յուրաքանչյուր 3 օրում արտադրվում է այնքան էլեկտրաէներգիա, որքան նախահեղափոխական Ռուսաստանում մեկ տարում։ Սպառման ապրանքների արտադրությունը 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է 14 անգամ, իսկ կուլտուր-կենցաղային առարկաներինը՝ 45 անգամ։

Կապիտալիզմի և սոցիալիզմի տնտեսական մրցության մեջ վերջին տարիներին Սովետական Միությունը ԱՄՆ-ից անցել է ոչ միայն աճման տեմպերով, այլև արտադրանքի շատ տեսակների՝ առանձնապես երկաթի, չուգունի, պողպատի, նավթի, ած-



խի, ցեմենտի, բրդյա գործվածքեղենի ամենամյա բացարձակ աճով։ 1965 թվականին արտադրանքի մի շարք կարևորագույն տեսակների գծով ՍՍՌՄ-ը կգերազանցի, իսկ մյուս տեսակների գծով կմոտենա ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության ժամանակակից մակարդակին։ Յոթնամյակն ավարտելուց հետո կանցնի ևս 5 տարի, գուցե և պակաս ու կլուծվի ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը։

Կոնտրոլ թվերով նախատեսվում են արդյունաբերության բոլոր ճյուղերում, առանձնապես ծանր ինդուստրիայում արտադրության զարգացման բարձր տեմպեր և բացարձակ մեծ աճ։ Յոթնամյակում այնքան արդյունաբերական արտադրանք է արտադրվելու, որքան Սովետական իշխանության անցած բոլոր 41 տարիներին։ Արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է մոտավորապես 80 տոկոսով։ Յոթնամյակի ընթացքում արդյունաբերական արտադրանքի ծավալի մեծացումը հավասար կլինի վերջին 20 տարում արտադրանքի աճին։

Յոթնամյակում պողպատի ձուլման միայն աճը կկազմի 31—36 միլիոն տոննա, մինչ-

դեռ վեց տարի առաջ մեր երկրի ամբողջ արտադրանքը կազմում էր ընդամենը 34,5 միլիոն տոննա, իսկ Արևմտյան Գերմանիան 1957 թվականին արտադրել է 28 միլիոն տոննա, Անգլիան՝ 22 միլիոն տոննա պողպատ։

Նավթարդյունաբերությունը, որը հարյուր տարուց ավելի է ինչ գոյություն ունի, իր արտադրանքը հասցրել է 113 միլիոն տոննայի, այնինչ յոթնամյակում այն ավելանալու է 127 միլիոն տոննայով։

Յոթնամյակում ավելի շատ էներգետիկ կարողություն է ստեղծվելու, քան մինչև այժմ գոյություն ունեցողները և գրեթե հավասար կլինի իրենց ամբողջ պատմության ընթացքում Անգլիայի, Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի ստեղծած կարողությանը միասին վերցրած, այլ կերպ ասած էլեկտրակայանների կարողության նախատեսված աճը հավասար կլինի 100 Դնեպրոգէսի կամ 1000 Վոլխովշինի։ Նախառևոլյուցիոն Ռուսաստանը պողպատի արտադրությամբ գրավում էր վերջին տեղերից մեկը, յոթնամյակի վերջերին Սովետական Միությունը տարեկան կձուլի մոտ 90 միլիոն տոննա պողպատ, որն ավելի կլինի, քան



ներկայումս ձուլում են Եվրոպայի բոլոր կապիտալիստական երկրները։

Սև մետաղների գլանվածքի արտադրության միայն աճը կկազմի մոտ 25 միլիոն տոննա։ Յոթնամյակում շարք կմտնեն Մագնիտագորսկի կոմբինատին հավասար 20 կոմբինատներ։ 1965 թվականին միայն մեկ օրում մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքը հավասար կլինի նախառևոլյուցիոն Ռուսաստանի ամբողջ 1913 թվականի արտադրանքին։

Առանձնապես բուռն զարգացում է ապրելու քիմիական արդյունաբերությունը։ Յոթնամյակում քիմիական արտադրանքի թողարկումը ավելանալու է մոտ 3 անգամ։ Պետք է կառուցվի կամ պվարտվի ավելի քան 140 խոշոր քիմիական ձեռնարկությունների շինարարությունը, վերակառուցվելու է ավելի քան 130 ձեռնարկություն։

Մեծ Հոկտեմբերի պանծալի տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է ՍՄԿԿ XXI համագումարի որոշումների կենսագործման համար համաժողովրդական լարված պայքարի իրադրության մեջ, յոթնամյա պլանի առաջին տարվա առաջադրանքների կատարման գործում ձեռք բերած հիանալի հաջողություններով։

Համագումարից հետո անցած ամիսների արդյունքները ցույց են տալիս, որ սովետական ժողովուրդը լավ է սկսել յոթնամյակը։ Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման կիսամյա պլանը կատարված է 105 տոկոսով։ 1958 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացել է 12 տոկոսով։

Բոլոր միութենական ռեսպուբլիկաները գերակատարել են արդյունաբերական արտադրանքի արտադրության կիսամյա պլանը։

1959 թվականի առաջին կիսամյակում արտադրվել է 21 միլիոն տոննա չուգուն, 29,3 միլիոն տոննա պողպատ, 23,1 միլիոն տոննա գլանվածք, 252 միլիոն տոննա ածուխ, 61,7 միլիոն տոննա նավթ, 126 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 17,5 միլիարդ խորանարդ մետր գազ և այլն։

Աշխատանքի արտադրողականությունը, 1958 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, արդյունաբերության մեջ աճել է 8 տոկոսով, շինարարության մեջ՝ 9 տոկոսով։ Ինքնարժեքի իջեցումից ստացված արտապլանային խնայողությունը կազմել է 4 միլիարդ ռուբլի։



1958 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ արտադրվել են 144 միլիոն քառակուսի մետրով ավելի գործվածքներ, 16 միլիոն զույգով ավելի կաշվե կոշիկներ, 20 միլիոն հատով ավելի տրիկոտաժե ներքնազգեստ, 3,4 միլիոն հատով ավելի տրիկոտաժե վերնազգեստ, 50 հազար տոննայով ավելի յուղ, 690 հազար տոննայով ավելի անարատ կաթնամթերք և այլն։

Բոլոր ռեսպուբլիկաները և ժողտնտխորհները մտնելով Մեծ Հոկտեմբերի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ պարտավորվել են ժամկետից շուտ կատարել արդյունաբերական արտադրանքի թողարկման տարեկան պլանը։

***

Մեծ Հոկտեմբերի 42-րդ տարեդարձը արժանավայել են դիմավորում կոլտնտեսային գյուղի աշխատավորները։

Լենինյան կոոպերատիվ պլանի հիման վրա գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացումը իսկական ռևոլյուցիոն հեղաշրջում էր սովետական հասարակության զարգացման գործում։ Կոլտնտեսային կարգի հաղթանակը գյուղացիությանն ընդմիշտ փրկեց կուլակային շահագործումից,

նրա առաջ լայնորեն բացեց ունևոր և կուլտուրական կյանքի ուղին։ Կոլտնտեսային կարգը ՍՍՌՄ-ը դարձրել է աշխարհում ամենախոշոր և առաջնակարգ հողագործական երկիրը, անսահման հորիզոններ է բացել կոմունիզմի կառուցման գործում բազմամիլիոն մասսաների ստեղծագործական նախաձեռնության, աշխատանքային հերոսության համար։

Վերջին տարիներին պարտիան համարձակորեն, լենինյան ուղղամտությամբ բացահայտեց գյուղատնտեսության ղեկավարման գործում տեղ գտած թերությունները ու սխալները, բարձրացրեց կոլտնտեսականների շահագրգռվածությունը իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ, վերակառուցեց գյուղատնտեսության արտադրության պլանավորման սիստեմը, ապահովեց տասնյակ միլիոնավոր հեկտար խոպան ու խամ հողերի յուրացումը, իրականացրեց տեխնիկայի հանձնումը կոլտնտեսություններին, մտցրեց գյուղատնտեսական մթերքների միասնական գներ։ Այդ բոլորը տվեցին իրենց հիանալի արդյունքները։ 1958 թվականին մեր երկրում հավաքվել է 8 միլիարդ 508 միլիոն փութ հաց։ Կաթի ընդհանուր արտադրությամբ ՍՍՌՄ-ը 1958 թվականին



հասել է ԱՄՆ-ին, իսկ յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասել է դեռևս 1957 թվականին։ ՍՍՌՄ-ը գերազանցում է ԱՄՆ-ին ցորենի արտադրության ծավալով ավելի քան 2 անգամ, շաքարի ճակնդեղի արտադրությամբ՝ մոտ 3 անգամ, բրդի արտադրությամբ՝ 2,5 անգամ։ Յուղի և կաթի արտադրությամբ ՍՍՌՄ-ը գրավում է առաջին տեղն աշխարհում, բրդի արտադրությամբ՝ երկրորդ տեղը։

Յոթնամյակի ընթացքում գյուղատնտեսության համախառն արտադրանքն ընդհանուր առմամբ ավելանալու է 1,7 անգամ։ Յոթնամյակի վերջերին գյուղատնտեսության առանձին տեսակների արտադրությունը հասցրվելու է հետևյալ չափերի. հացահատիկինը՝ 10—11 միլիարդ փթի, շաքարի ճակնդեղինը՝ 76—84 միլիոն տոննայի, բամբակինը՝ 5,7—6,1 միլիոն տոննայի, մսինը՝ (սպանդանոցային քաշով) 16 միլիոն տոննայի, կաթինը՝ 100—105 միլիոն տոննայի, կարտոֆիլինը՝ 147 միլիոն տոննայի, բանջարեղենինը՝ բնակչության պահանջմունքները լրիվ բավարարող չափերի։

Հողագործության բնագավառում առաջիկա տարիներին գլխավոր գիծը այսուհետև նույնպես մնում է հացահատիկի արտա-

դրության ըստ ամենայնի ավելացումը, որը գյուղատնտեսական արտադրության հիմքն է։ Այժմ ստեղծված են բոլոր պայմանները առաջիկա տարիներին հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը միջին հաշվով 3—4 ցենտներով ավելացնելու համար։ Անասնաբուծության բնագավառում յոթնամյակի գլխավոր խնդիրը մսի, կաթի, բրդի և ձվի արտադրության ավելացումն է։

Մսի տարեկան արտադրությունը պետք է հասցվի 16 միլիոն տոննայի, կաթինը 100—105 միլիոն տոննայի, բրդինը՝ մոտ 548 հազար տոննայի, ձվինը՝ 37 միլիարդ հատի։

Այդ խնդրի կատարման շնորհիվ մեր գյուղատնտեսության աշխատողները հարյուր հեկտար հողատարածության դիմաց ստացած մսի, կաթի և բրդի արտադրությամբ կգերազանցեն ԱՄՆ-ին։ 1965 թվականին յուրաքանչյուր բնակչի կհասնի օրական 1,2 լիտր կաթ, ամսական 6 կիլոգրամ միս։

Պարտիայի և կառավարության միջոցառումների կենսագործման, մեր կոլտնտեսային գյուղացիության հերոսական աշխատանքի շնորհիվ վերելքի ուղիով է ընթանում սոցիալիստական գյուղատնտեսությունը։



Առանձնապես նշանակալից են անասնաբուծության բնագավառում ձեռք բերված հաջողությունները։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականի վերջին ավելացել է 15 միլիոն գլխով, ոչխարներինը՝ մոտ 30 միլիոն գլխով, խոզերինը՝ 15,2 միլիոն գլխով։

1958 թվականին ՍՍՌՄ-ում հավաքվել է պատմության մեջ չտեսնված, ռեկորդային բերք՝ 8,5 միլիարդ փութ հացահատիկ, կոլտնտեսությունները և սովխոզները պետությանը հանձնեցին 3—5 միլիարդ փութ ցորեն, 1953 թվականի 1,9 միլիարդ փթի դիմաց։

1959 թվականի առաջին կիսամյակում, 1958 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 1,7 միլիոն գլխով, խոզերինը՝ 6,3 միլիոն, ոչխարներինը՝ 7,5 միլիոն գլխով։ Գերակատարվել է գարնանացան կուլտուրաների ցանքի պլանը։ Բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների 1959 թվականի ընդհանուր ցանքատարածությունը կազմում էր 196 միլիոն հեկտար, որը գրեթե 40 միլիոն հեկտարով





գերազանցում էր 1953 թվականի ցանքատարածությունը։

Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կոլտնտեսություններում և սովխոզներում առ 1-ը օգոստոսի 1959 թվականի, անցած տարվա համեմատությամբ, աճել է 16 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 10 տոկոսով։ Առ 20-ը օգոստոսի գնվել է միս՝ 61, կաթ՝ 16, ձու՝ 29 և բուրդ՝ 16 տոկոսով ավելի շատ, քան անցած տարվա նույն ժամանակաշրջանում։

Քառասուն տարի սրանից առաջ, հանդես գալով ՌԿ(բ)Պ VIII համագումարում Վ. Ի. Լենինը ասել է.

«Եթե վաղը մենք կարողանայինք տալ 100 հազար առաջնակարգ տրակտորներ, կարողանայինք բենզին մատակարարել նրանց, մեքենավարներ տալ (դուք շատ լավ գիտեք, որ սա առայժմ ֆանտազիա է), ապա միջակ գյուղացին կասեր. «Ես կողմնակից եմ կոմունային» (այսինքն՝ կոմունիզմին)»։

1958 թվականին մեր երկրի դաշտերում աշխատում էր 1 միլիոն 700 հազար տրակտոր, 500 հազար հացահատիկային կոմբայն, 700 հազար բեռնատար ավտոմեքենա և այլն։ Յոթնամյակի տարիներին գյուղատնտեսությունն ստանալու է ևս մեկ միլիոն



տրակտոր և միլիոնավոր գյուղատնտեսական այլ մեքենաներ։



Սովետական ժողովրդի բարօրության ու բարգավաճման, նրա նյութական ու հոգևոր աճող պահանջմունքների բավարարման նկատմամբ հոգատարությունը որոշում է Կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության գործունեության գլխավոր ուղղությունը։ Մեր պարտիան դա համարում է իր հիմնական խնդիրը, մեծ Լենինի պատգամների կենսագործման ուղղությամբ իր ամբողջ աշխատանքի իմաստը։ Ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ ՍՄԿՊ XX համագումարից հետո իրականացվել են այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք են՝ բանվորների և ծառայողների ցածր վարձատրվող կատեգորիաների աշխատավարձի բարձրացումը, նախատոնական և նախահանգստյան օրերին աշխատանքային օրվա կրճատումը, ծանր արդյունաբերության մի շարք ճյուղերում կրճատ աշխատանքային օր մտցնելը, հղիության և ծննդաբերության շրջանում կանանց տրվող արձակուրդների ժամկետի երկարացումը,

ուսման վարձի վերացումը, պետական կենսաթոշակների նոր օրենքը և այլն։

Սովետական պետությունը միլիարդ գումարներ է հատկացնում սոցիալական ապահովագրման, թոշակների, կենսաթոշակների, ձրի ուսուցման, բժշկական սպասարկման, արձակուրդների վճարման համար և այլն։ 1958 թվականին այդ նպատակի համար հատկացումները կազմել են 215 միլիարդ ռուբլի, 1953 թվականի 134 միլիարդ ռուբլու դիմաց, իսկ 1965 թվականին կազմելու են 360 միլիարդ ռուբլի։

ՍՄԿՊ XXI համագումարը ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ մըշակել է միջոցառումների մի ամբողջ սիստեմ։

Յոթնամյակի վերջում ՍՍՌՄ ազգային եկամուտը կաճի 62—65 տոկոսով, բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների ռեալ եկամուտները կաճեն 40 տոկոսով, կըվերացվեն բնակչությունից գանձվող հարկերը, կկարգավորվեն ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձը և կենսաթոշակների մինիմալ չափերը։

Ժողովրդի բարօրության նկատմամբ հոգատարության վկայություններից մեկը ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի ու



տնտեսական շրջանների բանվորներին և ծառայողներին կրճատ աշխատանքային օրվա փոխադրումն ու նրանց աշխատավարձի կարգավորումն ավարտելու ժամկետների մասին ՍՄԿՊ Կենտկոմի, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀԱՄԿԽ-ի որոշումն է։ Այդ որոշման կենսագործումը կարևոր էտապ կլինի ՍՍՌՄ-ում՝ աշխարհի ամենակարճատև աշխատանքային շաբաթի գործնական իրականացման ճանապարհին։

1958—1959 թվականներին յոթժամյա, իսկ ստորերկրյա աշխատանքներում 6-ժամյա աշխատանքային օրվա են փոխադրվել ածխարդյունաբերության, սև և գունավոր մետալուրգիայի, քիմիական ու ցեմենտի արդյունաբերության, երկաթ-բետոնե իրեր ու կոնստրուկցիաներ արտադրող և այլ ձեռնարկությունների աշխատավորները։ Այժմ աշխատանք է կատարվում 1959 թվականին սկսելու մեքենաշինական ու մետաղամշակման նավթի և գազի արդյունաբերության աշխատողներին կրճատ աշխատանքային օրվա փոխադրման համար։

ՍՄԿՊ Կենտկոմը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՀԱՄԿԽ-ը սահմանել են բոլոր բանվորներին և ծառայողներին կրճատ աշխատանքային օրվա փոխադրելու կոնկրետ

ժամկետներ, այն հաշվով, որ յոթնամյակի առաջին երկու տարիների ընթացքում մեր երկրում ավարտվի բոլոր բանվորների և ծառայողների փոխադրումը կրճատ աշխատանքային օրվա:

Աշխատանքային օրվա տևողության կրճատման պայմաններում բանվորների և ծառայողների աշխատավարձը ոչ միայն չի նվազել, այլև նոր, բարձր դրույքներ և ռոճիկներ մտցնելու կապակցությամբ էապես ավելացել է, հատկապես ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձը:

Նախատեսված է կարգավորել աշխատավարձը բոլոր արտադրական և ոչ արտադրական ճյուղերում, այն հաշվով, որ այդ աշխատանքն ամբողջովին ավարտվի 1962 թվականին: Նույն ժամկետներում կվերանայվի աշխատավարձի նվազագույն չափը, որը ամսական կհասցվի 400—450 ռուբլու:

Հաջողությամբ են կենսագործվում բնակարանային շինարարության վերաբերյալ պարտիայի միջոցառումները: Բավական է նշել, որ վերջին տարիներին շահագործման է հանձնվել 119 միլիոն քառ. մետր բնակելի տարածություն, բացի դրանից գյուղական վայրերում կառուցվել է ավելի քան 1,5 մի-



լիոն տուն: Սովետական իշխանության 40 տարիներին կառուցվել և վերակառուցվել է 558 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն:

Յոթնամյակում միայն քաղաքներում կառուցվելու է 15 միլիոն բնակարան: Դա նույնն է, թե ստեղծել Մոսկվայի նման 15, Լայպցիգի նման 75, Գորկու նման 100 նոր քաղաք:

Յոթնամյակում ընդհանուր առմամբ կառուցվելու է 610 միլիոն քառակուսի մետր բնակելի տուն: Այդ նշանակում է, որ 80 միլիոն մարդ կամ բնակչության 40 տոկոսը, այսինքն երեք ընտանիքներից մեկը բնակարան են ստանալու:

Նոր հասարակարգի հաղթանակի անհրաժեշտ պայմանը Լենինը համարում էր կուլտուրական ռևոլյուցիայի իրականացումը: Ղեկավարվելով Լենինի ցուցումներով, Կոմունիստական պարտիան իրականացրեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա: ՍՍՌՄ-ը վերածվեց համատարած գրագիտության երկրի: Մեզ մոտ չկա ոչ մի ռեսպուբլիկա, ազգային օկրուգ, որը մայրենի լեզվով չունենա դպրոցների, կուլտուր-լուսավորական հիմնարկների լայն ցանց:

1958 թվականին հանրակրթական դպրոցներն ավարտողների թիվը անցնում է 30 միլիոնից, կամ 3 անգամ ավել է քան 1913 թվականին։ Բուհերում և միջնակարգ մասնագիտական հիմնարկներում ավարտողների թիվը հասնում է 4 միլիոնի կամ 22 անգամ ավելի քան 1913 թվականին։

Կոմունիստական պարտիան ամենօրյա հոգատարություն է ցուցաբերում ժողովրդական կրթության բարելավման մասին։ Այդ բանն իր արտահայտությունն է գտնում «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և ՍՍՌՄ ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» օրենքի մեջ։

Այժմ ՍՍՌՄ-ում ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված է 54 միլիոն մարդ։ Այդ նշանակում է, որ մեզ մոտ յուրաքանչյուր 4-րդ մարդը սովորում է։ Դասավանդումը դպրոցներում կատարվում է 66 լեզուներով։ 40 ազգություն, որոնք մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան չունեին գիր և գրականություն, այժմ ունեն այն։

ՍՍՌՄ-ը վիթխարի հաջողությունների է հասել բարձրագույն կրթության բնագավառում։ Մեր երկրում այժմ գործում է 765 բուհ, 3344 տեխնիկում և միջնակարգ մաս-



նագիտական հաստատություն։ Բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների թիվը հասնում է մոտ 7,5 միլիոնի, որը 39 անգամ ավելի է, քան 1913 թվականին։ Մեր երկրի բուհերը 3 անգամ ավելի ինժեներներ են պատրաստում, քան ԱՄՆ-ում։ Յոթնամյակում ՍՍՌՄ-ի բուհերը երկրին տալու են 2 միլիոն 300 հազար մասնագետներ։ Միջնակարգ և տարրական դպրոցներում սովորողների թիվը հասցվելու է 38—40 միլիոնի, գիշերօթիկ դպրոցներում սովորելու են 2 միլիոն 500 հազար հոգի, կամ 14 անգամ ավել, քան այժմ։

Կոմունիստական պարտիան մշտական հոգատարություն է ցուցաբերում սովետական գիտության, գրականության, արվեստի, աշխատավորների կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման, սովետական մարդու անհատականության ծաղկման նկատմամբ։

Գիտական հիմնարկների թիվը 1914 թվականի համեմատությամբ ավելացել է 10 անգամ, գիտաշխատողների թիվը՝ 28 անգամ։ Այժմ մենք ունենք մոտ 3 հազար գիտական հիմնարկներ, որտեղ աշխատում են 284 հազար գիտաշխատողներ։

Սովետական երկրի փառապանծ ինտելիգենցիան պատվով է կատարում իր պարտքը ժողովրդի հանդեպ, բոլոր ուժերը նվիրաբերում է կոմունիստական շինարարության մեծ գործին, սովետական գիտությունը հարստացնում է նոր հայտնագործություններով, ստեղծում է գրականության և արվեստի մեր դարաշրջանին արժանի գործեր։

Ամբողջ աշխարհը հիացած է սովետական գիտնականների հաջողություններով՝ միջուկային ֆիզիկայի և ատոմային էներգիայի, ռեակտիվ ավիացիայի և հրթիռային տեխնիկայի բնագավառում։

Սովետական Միությունն ընթանում է արդիականության գիտա-տեխնիկական պրոգրեսի առջևից։ Գիտական մեծ սխրագործություններով մեր երկիրը դրեց տիեզերական տարածության նվաճման սկիզբը, որի մասին դարերով երազել է մարդկությունը։

1957 թվականի հոկտեմբերի 4-ին տիեզերական անհայտ հեռուները թռավ առաջին սովետական արհեստական արբանյակը, նրանից մեկ ամիս հետո երկինք բարձրացավ երկրորդը, իսկ 1958 թվականի մայիսի 15-ին՝ երրորդ արբանյակը, որը շարունակում է իր սրընթաց շարժումը։

1959 թվականի հունվար 2-ին դեպի Լու-



սին արձակվեց սովետական առաջին տիեզերական հրթիռը, որը դարձավ Արևի շուրջը թռչող առաջին արհեստական արբանյակը։

1959 թվականի սեպտեմբերի 12-ին դեպի Լուսին արձակվեց սովետական երկրորդ, իսկ հոկտեմբերի 4-ին՝ երրորդ տիեզերական հրթիռները, որոնք հասան նպատակին։ Սովետական տիեզերական հրթիռները գիտության ու տեխնիկայի նշանավոր հաջողությունն է, նոր դարագլխի նշանավորումը մարդկության կողմից տիեզերական տարածության նվաճման ասպարեզում։

Երկրի արհեստական արբանյակների և ապա արեգակնային համակարգության առաջին արհեստական մոլորակի արձակումը, երկրորդ տիեզերական հրթիռը Լուսնի վրա գցելը սովետական գիտության և տեխնիկայի տրիումֆն է։

Երկրորդ տիեզերական հրթիռի թռիչքի հետ միաժամանակ նավարկության դուրս եկավ մեծ Լենինի անունը կրող՝ աշխարհում առաջին ատոմային սառցահատը, որը կարող է մեկ տարի և նույնիսկ ավելի, չվերադառնալ բազա, փշրելով օվկիանոսների դարավոր սառույցները, նոր ուղիներ հարթել սառուցային հեռուներում։

Անգլիական «Բիրմինգհամ պոստ» թերթը

իր խմբագրական հոդվածում հիացմունքով գրում է. «Հասնելով այդպիսի ապշեցուցիչ հաջողության, Ռուսաստանը՝ դեպի Լուսին մեծ հրթիռ արձակող առաջին երկիրը ցույց տվեց, որ ինքը գտնվում է ամբողջ աշխարհի գիտության և տեխնիկայի ավանգարդում»։ «Նյու-Յորք թայմս»-ը գրում է. «Ամբողջ աշխարհի գիտնականները և մայրաքաղաքները ծափահարում են տեխնիկայի ասպարեզում ռուսների հաջողությունների առթիվ, դրանք ապշեցուցիչ համարելով»։

Այս բոլոր փաստերը խոսում են այն մասին, որ միայն սոցիալիզմն է ընդունակ լայն հորիզոններ բացելու արտադրական ուժերի բուռն աճի համար, միլիոնավոր մարդկանց ձիրքերի ու տաղանդների ծաղկման համար։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի տարեդարձը խանդավառությամբ են դիմավորում սովետական բազմազգ պետության բոլոր ժողովուրդները։

Սովետական յուրաքանչյուր քաղաքացի՝ մեր բազմաթիվ բարեկամներն արտասահմանում տեսնում են, թե ինչպիսի աննախընթաց վերելք են ապրում մեր ռեսպուբլիկաները, նյութական և հոգևոր կյանքի ինչ-



պիսի բարձր մակարդակի են հասել նրանք։ Մեր լայնածավալ Հայրենիքի բազմազգ ժողովուրդները միասնաբար կոմունիզմ են կառուցում, միահամուռ հավանություն են տալիս պարտիայի ու կառավարության որոշումներին և ակտիվորեն պայքարում են նրանց կենսագործման համար։

Պարտիան ժողովուրդների բարեկամությունը դիտում է որպես Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մեծագույն նվաճումը, բազմազգ սովետական պետության բոլոր հաջողությունների գլխավոր պայմանը և անդուլ հոգատարություն է ցուցաբերում նրա ամրապնդման նկատմամբ։

Ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարների մարմնավորման վառ օրինակ է հանդիսանում վերածնված Սովետական Հայաստանը։ Սովետական իշխանության տարիներին մեր ռեսպուբլիկայում բուռն զարգացում ստացավ արդյունաբերությունը, ստեղծվեցին առաջնակարգ գործարաններ ու ֆաբրիկաներ, հիդրոկայաններ, արդյունաբերության բազմաթիվ նոր ճյուղեր, հանդես եկան նոր քաղաքներ ու արդյունաբերական կենտրոններ։ Բավական է նշել, որ ռեսպուբլիկան այժմ յուրաքանչյուր

7 օրում ավելի շատ արտադրանք է տալիս, քան 1913 թվականին։

Վերելքի ուղիով է ընթանում ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը, գնալով ամրապնդվում է կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը, բարելավվում կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը։

1958 թվականին գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած հաջողությունների համար մեր ռեսպուբլիկան պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Ժողովրդական կրթության զարգացման, բարձրորակ մասնագիտական կադրերի առկայությամբ, գիտության զարգացմամբ, Սովետական Հայաստանը ետևում է թողել ոչ միայն իր հարևան, այլև Եվրոպայի զարգացած կապիտալիստական շատ երկրների։

Յոթնամյակը հոյակապ հեռանկարներ է բացում Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման համար։ Յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով նախատեսվում է Հայկական ՍՍՌ արդյունաբերական արտադրության աճ 2,2 անգամ, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը կաճի 1,7 անգամ։

Լուրջ ուշադրություն է դարձվելու բնակա-



րանային շինարարությանը, ինչպես նաև աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման հարցերին։

Հայաստանի աշխատավորները, ինչպես սովետական ամբողջ ժողովուրդը եռանդուն աշխատանքով կենսագործում են յոթնամյա պլանի հոյակապ խնդիրները։

Արդյունաբերության աշխատողները ծավալելով համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ ժամկետից շուտ կատարեցին յոթնամյակի առաջին տարվա կիսամյա պլանը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը կատարել է 104 տոկոսով, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ապահովելով արտադրության ծավալի 12 տոկոս աճ։ Շատ արդյունաբերության արտադրանքի կարևորագույն շատ տեսակների արտադրության առաջին կիսամյա պլանը գերակատարված է։ Առանձնապես նշանակալից են քիմիական արդյունաբերության զարգացումը, որ 22 տոկոսով ավելացրել է իր բազմատեսակ արտադրանքի թողարկումը։ Կիսամյակում պլանից ավելի արտադրվել են մեծ քանակությամբ գործվածքներ, գուլպա և

նակի, տրիկոտաժեղեն, կոշիկ, կահույք, շաքարավազ, կաթնամթերք և այլն։ Կոլտնտեսություններն ու սովխոզները այս տարվա գարնանը գցեցին 2738 հեկտար նոր պտղատու և խաղողի այգիներ։

Անասունների գլխաքանակի աճի հետ միասին ավելացավ անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Մսի արտադրությունը 1958 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ ավելացավ 16,3 տոկոսով, կաթինը՝ 4,6 տոկոսով, ձվինը՝ 27,4 տոկոսով, բրդինը՝ 1,8 տոկոսով։

Այժմ կոլտնտեսային գյուղի աշխատավորները հավաքում են իրենց անձնվեր աշխատանքով աճեցրած առատ բերքը։

Վերելք է ապրում հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ 1958—1959 ուս. տարում սովորողների թիվը կազմում էր 291,5 հազար մարդ։ Բուհերն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները տվել են 7 հազարից ավելի երիտասարդ մասնագետներ, այդ թվում 2,2 հազար ինժեներներ ու տեխնիկներ. գյուղատնտեսության 1,8 հազար մասնագետ-



ներ, 1,8 հազար մանկավարժներ, ավելի քան 500 բժշկական աշխատողներ։

Հայրենական գիտության զարգացման գործում արժեքավոր ներդրում են կատարում ռեսպուբլիկայի գիտական-հետազոտական հիմնարկները, տարեցտարի ընդլայնվում է կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը, ավելանում է թերթերի, ամսագրերի թիվը, գրքերի հրատարակումը։ ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում հայ ժողովուրդը վստահորեն և հաստատ կերպով գնում է դեպի կոմունիզմ։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի 42-րդ տարեդարձը, սոցիալիզմի կառուցման գործում ձեռք բերած նորանոր նվաճումներով են դիմավորում ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալիզմի լագերի կազմավորումը և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ստեղծումը համաշխարհային պատմության ամենակարևոր իրադարձություններն են Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո ընկած ժամանակաշրջանում։

Հասարակական զարգացման ամբողջ ընթացքը վերջին տասնամյակներում անհերքելիորեն հաստատում են մեծ Հոկտեմբերի գաղափարների կենսահաստատ ուժը և անհաղթելիությունը։ Այդ ժամանակամիջոցում այնպիսի ռևոլյուցիոն վերափոխություններ են կատարվել, որոնք արմատապես փոխել են ամբողջ ժամանակակից աշխարհը։ Ընդամենը 42 տարի է անցել, երբ «Ավրորա» հածանավի հրանոթային համազարկերը ազդարարեցին մարդկության պատմության մեջ նոր դարագլխի՝ կապիտալիստական ստրկությունից բոլոր աշխատավորների ազատագրման և սոցիալիզմի դարագլխի սկսվելու մասին։ Անցավ որոշ ժամանակ և լենինիզմի դրոշով, Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում հաղթանակեց սոցիալիստական ռևոլյուցիան, ստեղծվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որտեղ ապրում է մոտ մեկ միլիարդ մարդ և արտադրվում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեկ երրորդից ավելին։

Բուռն թափով զարգանում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների ժողովրդական տնտեսությունը և կուլտուրան։ Սոցիալիստական երկրների արդյունաբերա-



կան արտադրանքը 1958 թվականին, 1937 թվականի համեմատությամբ, ավելացել է 5 անգամ։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան 1950—1958 թ. թ. արդյունաբերական արտադրանքն ավելացրել է 10 անգամ։ Լեհաստանում նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ այն ավելացել է ավելի քան 5,5 անգամ, Չեխոսլովակիայում՝ 3,3 անգամ, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում՝ ավելի քան 2,5 անգամ, Ռումինիայում՝ մոտ 4 անգամ, Հունգարիայում՝ ավելի քան 4 անգամ, Բուլղարիայում՝ մոտ 9 անգամ, Ալբանիայում՝ 18 անգամ, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքը 1949 թվականի համեմատությամբ, ավելացել է 3,5 անգամ։ Լեհաստանը, Հունգարիան, Ռումինիան, Բուլղարիան դարձել են ինդուստրիալ-ագրարային երկրներ, զարգացած ծանր արդյունաբերությամբ, Չինաստանը ագրարայինից վերածվում է ինդուստրիալ-ագրարային երկրի։ Հաջողությամբ իրագործվում է գյուղատնտեսության կոոպերացումը։ Չինաստանում, Բուլղարիայում և ԿԺԴՌ-ում արդեն ավարտվել է գյուղատնտեսության

կոոպերացումը, ավարտվելու վրա է Չեխոսլովակիայի և Ալբանիայի գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման գործը, կոոպերացումը լայնորեն ծավալվում է մյուս երկրներում։

Սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոոպերացիայի շնորհիվ ժողովրդական դեմոկրատիայի որոշ երկրներ արդեն թևակոխել են սոցիալիզմի կառուցումն ավարտելու ժամանակաշրջանը, իսկ մյուս երկրներում հաջողությամբ առաջ է ընթանում սոցիալիստական հասարակարգի հիմքերի ստեղծումը։

Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ համաշխարհային սոցիալիստական սիստեմը ամբողջությամբ վերցրած, արդեն հասել է համաշխարհային կապիտալիստական սիստեմին։ Սոցիալիստական երկրներին բաժին է ընկնում համաշխարհային արդյունաբերական արտադրության մեկ երրորդից ավելին, հացահատիկի համաշխարհային արտադրության գրեթե կեսը և բամբակի 13 տոկոսը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանի կատարման ու գերակատարման, ինչպես նաև ժողովրդական դե-



մոկրատիայի երկրների էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի շնորհիվ, համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրները կարտադրեն ամբողջ համաշխարհային արդյունաբերական արտադրանքի ավելի քան կեսը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան դարավոր նիրհից արթնացրեց և ազգային-ազատագրական ընդհանուր պայքարի մեջ ներքաշեց գաղութային ու կախյալ երկրների միլիոնավոր մարդկանց, սկիզբ դրեց իմպերիալիզմի գաղութային անարգ սիստեմի փլուզմանը։

Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը, աշխատավորների լայն խավերը ավելի ու ավելի են համոզվում հասարակության սոցիալիստական սիստեմի անվիճելի առավելությունների մեջ, սոցիալիզմի մեջ նրանք տեսնում են ելքը այն փակուղուց, որին հասցրել է կապիտալիզմը։ Նրանք տեսնում են, թե ինչեր է անում կապիտալի կապանքներից ազատագրված և իր բախտը սեփական ձեռքը վերցրած, երկրի բոլոր նյութական ու հոգևոր արժեքները տնօրինող սովետական մարդը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 42-րդ տարեդարձը սոցիալիզմի լագերի երկրների ժո-

ղովուրդները դիմավորում են խաղաղության ուժերի նոր հաղթանակների իրագրության մեջ։ Սովետական Միությունը անշեղորեն առաջնորդվում է տարբեր հասարակական ու քաղաքական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան կուրսով, հետևողականորեն պայքարում է խաղաղության և ժողովուրդների անվտանգության ապահովման համար, վայելում է հողագնդի բոլոր ազնիվ մարդկանց մեծագույն վստահությունը և համակրանքը։ ՍՍՌՄ կառավարության ջանքերի և խաղաղասեր ուժերի անդուլ պայքարի շնորհիվ «սառը պատերազմի» սառույցը ոչ միայն ճեղքվածք է տվել, այլև սկսել է կոտրատվել։ «Սառը պատերազմը» տարիներ շարունակ միլիոնավոր մարդկանց մեջ ստեղծել է տագնապ վաղվա օրվա համար, որպես ծանր բեռ ընկել է աշխատավորների ուսերին։

Սովետական Միությունը հետևողականորեն վարելով տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականություն, հետևողական պայքար է մղում միջազգային լարվածության թուլացման, խաղաղության և ժո-



ղովուրդների անվտանգության ապահովման համար։

Ամբողջ աշխարհի աշխատավորների ուշադրության կենտրոնում է գտնվում Սովետական Միության Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ն. Ս. Խրուշչովի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերի հանդիպումը։ Նրանք վառ հույսեր են տածում, որ այդ հանդիպումը բարերար ազդեցություն կգործի ոչ միայն երկու ամենահզոր պետությունների հարաբերությունների բարելավման վրա, այլև մեծապես կնպաստի երկրագնդի մնացած մասերում խաղաղության և դեմոկրատիայի գործի հաղթանակին։

Բոլոր երկրների ժողովուրդները որպես խաղաղության բախտի նկատմամբ սովետական կառավարության անդուլ հոգատարության նոր վառ դրսևորում ընդունեց ԱՄՆ-ում գտնված ժամանակ ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայում ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ն. Ս. Խրուշչովի ելույթը և ընդհանուր ու լրիվ զինաթափման մասին ՄԱԿ-ի քննարկմանը ներկայացրած սովետական կառավարության դեկլարացիան, որոնց մեջ շարադրված են խաղաղության ամրապնդման պարզ ու հստակ ծրագիրը։

«Սովետական կառավարությունը, բազմակողմանիորեն քննարկելով ստեղծված իրադրությունը,— ասաց ընկեր Խրուշչովն իր ելույթում,— հանգեց այն հաստատ համոզման, որ փակուղուց ելքը պետք է որոնել ընդհանուր և լրիվ զինաթափման մեջ։ ...Հենց ընդհանուր և լրիվ զինաթափումը կվերացնի մասնակի զինաթափման հարցերը քննարկելիս առաջ քաշվող բոլոր պատնեշները և ուղի կհարթի համապարփակ, լիակատար վերահսկողություն հաստատելու համար»։

Սովետական կառավարության դեկլարացիան նախատեսնում է չորս տարվա ընթացքում ցրել բոլոր զինված ուժերը և արգելել դրանց վերականգնումը, ոչնչացնել ռազմական տեխնիկայի, սպառազինությունների և մարտական պաշարների բոլոր տեսակները, լրիվ արգելել միջուկային զենքը և վերացնել նրա պաշարները, լրիվ դադարեցնել հրթիռային զենքի բոլոր տեսակների՝ ներառյալ ռազմական նշանակություն ունեցող տիեզերական հրթիռների արտադրությունը և ոչնչացնել դրանք, արգելել քիմիական ու բակտերիոլոգիական պատերազմի միջոցները և ոչնչացնել զենքի այդ տեսակների պաշարները, վերաց-



նել ուրիշի տերիտորիաներում ռազմական բազաները և հրթիռների արձակման բոլոր հարմարանքները, վերացնել ռազմական արտադրությունը, վերացնել ամեն տեսակ զինվորական ծառայությունները և ռազմական գործի ուսուցումը, վերացնել ռազմական մինիստրությունները և այլն։

Ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման գործում ձեռք բերած հաջողությունների համար սովետական ժողովուրդը պարտական է Կոմունիստական պարտիային, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեին։ Կոմունիստական պարտիայի իմաստուն, հեռատես քաղաքականությունը կոմունիզմի նոր հաղթանակների երաշխիքն է ՍՍՌՄ-ում։

Ավելի քան իր կեսդարյա գործունեությամբ ու ժողովրդի շահերին անձնվեր ծառայությամբ, կոմունիզմի գաղափարների համար մղած պայքարով Կոմունիստական պարտիան ձեռք է բերել ժողովրդի վստահությունը, վայելում է նրա անսահման սերն ու հարգանքը։

Այժմ բոլորը տեսնում են, որ լենինյան պարտիան պատվով է կատարում կոմունիզմի համար սովետական ժողովրդի պայքարը կազմակերպողի և ոգեշնչողի իր դե-

րը։ Սովետական ժողովուրդը միահամուռ հավանություն է տալիս պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականությանը, այն համարելով իր կենսական հարազատ գործը և ակտիվորեն պայքարում է պարտիայի որոշումների կենսագործման համար։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ստեղծագործական անսպառ ուժերով լի սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործում է կոմունիզմի կառուցման յոթնամյա պլանը։

Յոթնամյակը նոր, վճռական քայլ է մեր երկրի պատմական զարգացման ճանապարհին, «Կոմունիստական պարտիան,— ասաց ընկեր Խրուշչովը ՍՄԿՊ XXI համագումարում,— ամբողջ սովետական ժողովուրդը լի են հաստատ վստահությամբ, որ իրենք կգրավեն նաև այդ սահմանագիծը և դուրս կգան լայն բարձրավանդակ, և այդ ժամանակ կբացվեն նոր հորիզոններ, այդ ժամանակ ավելի հեշտ կլինի առաջ ընթանալը»։

Յոթնամյա պլանի հաջողությունը վճռում են մարդիկ, մեր աշխատավորները։ ՍՄԿՊ XXI համագումարին հաջորդած կարճ ժամանակաշրջանը նույնպես վառ կերպով ցույց է տալիս, թե ինչպես մեր անծայրա-



ծիր Հայրենիքի աշխատավորները, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, գործարանների ու ֆաբրիկաների կոլտնտեսությունների, սովխոզների աշխատողները, յուրաքանչյուր արտադրական տեղամաս, մեծագույն խանդավառությամբ ձեռնամուխ է եղել յոթնամյա պլանի, կոմունիզմի կառուցման, պատմության մեջ իրեն հավասարը չունեցող հոյակապ ծրագրի կենսագործմանը։

Մոսկվայի և Լենինգրադի մեքենաշինարարները, Ուկրաինայի մետալուրգներն ու ածխահատները, Բաշկիրիայի նավթագործները, Ուրալի շինարարները, Գորկու քիմիագործները, Բելոռուսիայի արդյունաբերության, Ղազախստանի գունավոր մետալուրգիայի աշխատողները, Իվանովոյի տեքստիլագործները հանդես եկան յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու միլիոնների շարժման նախաձեռնողներ։ Վլադիմիրի և Սվերդլովի տնտեսական շրջանների աշխատողները խնդիր դրեցին ներքին ռեզերվներն ավելի լավ օգտագործելու շնորհիվ յոթնամյակի համար նախատեսված արտադրության մակարդակին հասնել ժամկետից շուտ, ՌՍՖՍՌ, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ղազախստանի, Վրաստանի,

Ուզբեկստանի, Հայաստանի և այլ ռեսպուբլիկաների գյուղատնտեսության աշխատավորները պարտավորվել են ժամկետից շուտ կատարել յոթնամյա պլանը։

Բանվոր դասակարգի, կոլտնտեսությունների, գյուղատնտեսության և սովետական ինտելիգենցիայի քաղաքական և աշխատանքային բարձր ակտիվությունը, նրանց անձնուրաց աշխատանքը պարտիայի և կառավարության շուրջը համախմբվածությունը այն բանի երաշխիքն են, որ յոթնամյա պլանը ոչ միայն կկատարվի, այլև կգերակատարվի։ Դրանով իսկ Սովետական Միությունը նոր խոշոր առաջընթաց քայլ կանի կոմունիզմի կառուցման ճանապարհին։

Զինված համագումարի պատմական որոշումներով, է՛լ ավելի սերտորեն համախմբելով մեր շարքերը հարազատ Կոմունիստական պարտիայի և նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, սովետական ժողովուրդը ստեղծագործական անսպառ ուժերով լի, վստահորեն և հաստատ կերպով առաջ է գնում դեպի կոմունիզմ։

---

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ԱԼԲԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Նոյեմբերի 29-ին լրանում է Ալբանական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ազատագրման 15-րդ տարեդարձը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ալբանական հերոսական ժողովուրդը արիաբար մարտնչում էր իր հայրենիքը օկուպացրած իտալո-գերմանական ֆաշիստների դեմ։ Ֆաշիզմի լծից ազատագրման գործում ալբանական ժողովրդին մեծագույն օգնություն ցույց տվեց Սովետական Միությունը։ Բալկաններում Սովետական Բանակի կողմից հիտլերյան զորքերի ջախջախումը նպաստավոր պայմաններ ստեղծեց Ալբանիայի ազատագրման համար։

1944 թվականի նոյեմբերի 29-ին ալբանական ժողովրդական բանակը երկրից դուրս շպրտեց ֆաշիստական օկուպանտներին։ Ալբանիայի ազատագրման հենց այդ օրն էլ հռչակվեց որպես ազգային տոնի օր։

Իմպերիալիզմի կապանքներից ազատա-

գըրված ալբանական ժողովուրդը ժողովրդական տնտեսության և կուլտուրայի ծաղկման իսկական վերելք ապրեց։ Ժողովրդական իշխանության տարիներին, Ալբանիայի Աշխատանքի պարտիայի գլխավորությամբ, ալբանական ժողովուրդը սոցիալ-տնտեսական վերափոխման արմատական միջոցառումներ է կատարել։ Երկրում ոչընչացվել է միապետությունը և հաստատվել են դեմոկրատական կարգեր։ Ազգայնացվել է ամբողջ արդյունաբերությունը և տրանսպորտը։ Անց է կացվել ագրարային ռեֆորմ։ Կարճ ժամանակամիջոցում Ալբանիան հետամնաց ագրարային երկրից դարձել է ագրարային-ինդուստրիալ երկիր։

Դեմոկրատական կարգերի հաստատումից հետո ալբանական ժողովուրդը, Սովետական Միության անշահախնդիր օգնությամբ, հըսկայական հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման ուղղությամբ։

1938 թվականին արդյունաբերական արտադրանքը, երկրի ամբողջ էկոնոմիկայի մեջ, կազմել է միայն 18 տոկոս։ 1955 թվականին, առաջին հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու շնորհիվ արդյունաբերական արտադրանքը կազմեց 43,5 տոկոս, իսկ



գյուղատնտեսությանը՝ 56,5 տոկոս։ 1955 թվականին արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը, 1938 թվականի համեմատությամբ, աճել է գրեթե 11 անգամ։ Ածխի արդյունաբերությունը 1955 թվականին 53 անգամ ավելի շատ արտադրանք է տվել, քան 1938 թվականին։ Այդ տարիների ընթացքում քրոմի հանքաքարի հանույթը ավելացել է 16 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 9 անգամ, թեթև արդյունաբերությունը՝ 25 անգամ։ 1955 թվականին, ամեն մի շնչին հասնող ածխի, նավթի, քրոմի և պղնձի հանքաքարի հանույթով Ալբանիան ավելի շատ արտադրանք է տվել, քան Հունաստանը, Թուրքիան և Իտալիան։

Երկրորդ հնգամյա պլանի առաջադրանքների համաձայն 1956—1960 թվականներին, արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը, 1938 թվականի համեմատությամբ ավելանալու է ավելի քան 21 անգամ։

Երկրում ստեղծված ագրարային ռեֆորմի հետևանքով 70 հազար 211 չքավոր և հողազուրկ գյուղացիական տնտեսություններ ըստացել են 173 հազար հեկտար հող, հարյուր-հազարավոր ձիթենու ծառեր, հազարավոր գլուխ բանող անասուն, գյուղատըն-

տեսական բազմաթիվ գործիքներ և այլն։ 1956 թվականին, 1938 թվականի համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների արտադրությունը կազմել է 167 տոկոս, ցանքատարածությունը՝ 170 տոկոս։ 1960 թվականին ցանքային տարածությունները, մինչպատերազմյանի համեմատությամբ, կավելանա երկու անգամ։ Ալբանիայում ստեղծված է մոտ 1600 գյուղատնտեսական կոոպերատիվներ, որոնք զբաղեցնում են երկրի ամբողջ հողային տարածությունների 52 տոկոսը։

Ալբանիայի Աշխատանքի պարտիան և ժողովրդական կառավարությունը լուրջ ուշադրություն են դարձնում աշխատավորության նյութական բարեկեցության բարելավման վրա։ Նախատեսված է երկրորդ հնգամյակում երկրի ազգային եկամուտը ավելացնել 53 տոկոսով։ Առաջին հնգամյակում աշխատավորների ռեալ աշխատավարձը ավելացել է 20 տոկոսով, իսկ գյուղացիության եկամուտները՝ 35 տոկոսով։ Երկրորդ հնգամյա պլանի դիրեկտիվների համաձայն նախատեսված է բանվոր-ծառայողների ռեալ աշխատավարձը բարձրացնել 25 տոկոսով, իսկ գյուղացիության եկամուտները՝ 18 տոկոսով։



Մինչև պատերազմը Ալբանիայի ամբողջ ազգաբնակչության միայն 17 տոկոսն էր գրագետ։ Ներկայումս մինչև 40 տարեկան հասակ ունեցող բնակչության մեջ անգրագիտությունը լրիվին վերացված է։ Առաջին ինստիտուտը Ալբանիայում բացվել է 1946 թվականին։ 1957 թվականին, երկրի ամբողջ պատմության մեջ առաջին անգամ բացվել է համալսարան, որտեղ ներկայումս սովորում են մոտ 2 հազար ուսանող։ Մինչև պատերազմը Ալբանիայում կար ընդամենը 2 լրագիր։ Ներկայումս երկրում լույս են տեսնում 12 լրագիր և 33 ամսագիր։ Վերջին 14 տարվա ընթացքում ավելի շատ գրքեր են հրատարակվել, քան նախորդ 400 տարվա ընթացքում։ Առաջներում Ալբանիայում ոչ մի թատրոն չի եղել, ժողովրդական իշխանության տարիներին բացվել է 5 պրոֆեսիոնալ թատրոն, բացի դրանից գոյություն ունի նաև ավելի քան 1000 ինքնագործ թատրոն։

Հավատարիմ մնալով մարքսիզմ-լենինիզմի մեծ ու ամենահաղթ ուսմունքին, Ալբանիայի Աշխատանքի պարտիան ալբանական ժողովրդին վստահորեն տանում է սոցիալիզմի կառուցման ուղիով։

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

## СОДЕРЖАНИЕ


Стр.

Материалы для докладов и бесед

42-я годовщина Великой Октябрьской Социалистической революции . . . . . 1

В братских социалистических странах

Новые успехи Народной Республики Албании . . . . . . . 45


Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 19 1959 г.


ՎՖ 07225 Պատվեր 633 Տիրաժ 8565

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։